## Ստալին կը խոստովանի

Պատասխանելով Նիւ Եորքի «Իվինինկ Ուըրլտ» թերթի հեռագրական հարցարանին կրօնական հալածանքներու մասին, Ստալին կը յայտարարէ.

«Համայնավար կուսակցութիւնը չի կրնար չէզոք մնալ կրօնքի հանդէպ եւ կանոնաւոր պայքար մը մղէ կրօնական նախապաշարումներուն դէմ։ Համայնավար կուսակցութիւնը գիտութեան պաշտպան է, մինչ կրօնական նախապաշարումները գիտութեան հակառակ կը գործեն»։

Այն հարցումին թէ խորհրդային իշխանութիւնը ջնջա՞ծ է թէ ոչ կղերականութիւնը, բոլշեւիկ դիկտատորը հաստատական պատասխան կուտայ, աւելցնելով սակայն որ անիկա բոլորովին հաշուեյարդարի չէ ենթարկուած դեռ։ Եզրակացնելով կ'ըսէ. «Հակակրօնական պրոպագանդան միջոց մընէ, որով կատարեալ հաշուեյարդարի պիտի ենթարկուի յետաշրջական կղերականութիւնը»։

## Գաղտնի կազմակերպութիւն մը Բագուի մէջ

«Պրոմէթէ» իր վերջին թիւով կը գրէ թէ Չեկան Բագուի մէջ երեւան հանած է գաղտնի կազմակերպութիւն մը, որուն նպատակն էր տապալել խորհրդային կառավարութիւնը։ Այս կազմակերպութիւնը կը սպաննէր համայնավար կուսակցութեան վարիչները եւ հակաբոլշեւիկ յայտարարութիւններ կը ցրուէր։ Երեւան հանուած է նաեւ գաղտնի տպարան մը։ Այս կազմակերպութեան անդամներէն 21 հոգի ձերբակալուած են։ Դաւադիրներու դատը պիտի տեսնէ ոչ թէ սովորական դատարանը, այլ Չեկան, ինչ որ կը նշանակէ թէ տասնեակ մը պարագլուխներ մահուան պիտի դատապարտուին։

«Վէչէրնայա Մոսկուա» թերթն ալ կը գրէ թէ Բագուի մէջ երեւան հանուած է գաղտնի դաւադրական կազմակերպութիւն մը, որ ահաբեկումներ կը կատարէր Բագուի եւ շրջականերուն մէջ։ Ձերբակալուած են 14 հոգի։

⁂ «Զարիա Վոստոկա» կը գրէ թէ Ադրբէջանի համայնավար կուսակցութեան անդամներէն Աբրամով եւ Սուվորով սպաննուած են անծանօթներու կողմէ։ Ձերբակալուած են ութ կասկածելիներ, որոնց մէջ «Մուսավաթ»ի անդամ սպայ մը։ Սպաննուած են ուրիշ երկու համայնավար պետեր՝ Խուտանազար եւ Շաֆի։ Սպանիչն է Մուսայիտ անուն յայտնի յեղափոխական մը։ Այս սպանութիւնները խոր տպաւորութիւն առաջ բերած են բոլշեւիկներուն վրայ։

## Խստութիւններ գիւղացիներուն դէմ

Թիֆլիսի բոլշեւիկան պաշտօնաթերթ «Զարիա Վոստոկա» կը գրէ թէ ընդհ. դատախազ Խուդատատի գլխաւորութեամբ մարմին մը ղրկուած է գաւառները՝ քննութիւն կատարելու համար։ Քննիչ մարմինը հաստատած է թէ կապեր կան կուլակներուն եւ տեղական կարգ մը պաշտօնեաներուն միջեւ։

Շամախի շրջանին մէջ ձերբակալուած են 18 գիւղացիներ եւ գրաւուած՝ 420 թօնօ ցորեն։ Ձերբակալուած գիւղացիները զանազան պատիժներու դատապարտուած են։ Զուքուր Եուրտի մէջ հաւաքական տնտեսութեան մը պետը մերժած է յանձնել իշխանութեանց կողմէ պահանջուած ցորենը. 40ի տեղ տուածէ 10 թօնօ։ Մարդը ձերբակալուելով դատարան յանձնուեցաւ։ Քուպալը-Պալա-Օղլան գիւղին մէջ «կոլխոզ»ի մը շէնքերը կրակի տրուած են եւ երեք համայնավարներ սպաննուած։












## "ՓԵՏՐՈՒԱՐ 18" ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՓՈՆ Տ'ՕՊՆԱ.— Վաղը կիրակի կէսօրէ վերջ, ժամը 2ին Հ.Յ.Դ. Գրադարանի սրահին մէջ։
Կը նախագահէ Մ. ՇԱՀՊԱԶԵԱՆ
Կը խօսի Ընկ. ՎԱՀԱՆ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ
երգ, արտասանութիւն, նուագ։ Կը ներկայացուի՝
«ԲԱՐԵԿԵՆԴԱՆԻ ԱՆԿՈՒՏԻՆԵՐԸ» (զաւեշտ)

ՊԻՅԵԱՆԲՈՒՌ.— Հ. Յ. Դ. Զաւարեան ենթակոմիտէի կողմէ վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին։
Salle Solferino, 23 Rue Solferino, Billancourt
Կը նախագահէ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ
Կը խօսի՝ ԱՇՈՏ - ԱՐԾՐՈՒՆԻ
Բանախօսութիւն եւ գեղարուեստական ճոխ բաժին

ՍԷՆ ԼՈՒԻ (Մարսէյլ).— Վաղը կէսօրէ վերջ ժամը 2.30ին։
Կը խօսին՝ Ընկերներ ԱԲՈՅԵԱՆ եւ Բ. ՄԻԼՏՈՆԵԱՆ
Հանդէսի մանրամասնութիւնները իւրաքանչիւր վայրի վրայ։



## Հ. Յ. Դ.

### ՓԱՐԻԶ

Անիէռ-Պուա-Քոլոմպի Ջէյթուն ենթակոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան և Փոթորիկ խումբերըայսօրՇաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 79 Rue des Chambards, Bois-Colombes: Կը խօսի՝ Ընկ. Մ. Գույումճեան։

Իսի-լէ-Մուլինոյի Մուրատ խումբի ժողովը՝ այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ին 164 Ave. de Verdun, Իսի-լէ-Մուլինօ։

### ԳԱՒԱՌ

Վիէնի Շրջ. կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 3ին Հ. Յ. Դ. Ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

Մարսէյլի Պատանեկան միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2ին 63 Rue de la République։

Կրընոպլի կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը կիրակի ժամը 2.30ին ընկ. Կարապետի սրճարանը։

Լիոնի կոմիտէի Դասախօսական ժողովը վաղը կիրակի առաւօտ ժամը 8.30ին Գ. Թաղապետարանի ժառենադարանին մէջ։ Կը խօսի՝ Ընկ. Ա., Նիւթ՝ «Ինչո՞ւ կը պայքարինք համայնավարութեան դէմ»։ Կը հրաւիրուին բոլոր ընկերները։

### ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒՆ

Վաղը կիրակի ժամը 2.30ին տեղի կ'ունենայ եկեղեցիի սրահին մէջ, Բ. անդամական ժողովը, կազմակերպական աշխատանքով զբաղելու համար։

Կը հրաւիրուին նոր արձանագրուիլ փափաքողները եւ Մարսէյլի եւ Սէն-Լուի հայ արիները։ Անպայման ներկայ գտնուիլ այս խիստ կարեւոր ժողովին։ Կարեւոր օրակարգ եւ շարունակութիւն նախորդ դասախօսութեան։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

մըն է եւ թէ այդ բանին համար լուրջ պատճառներ պէտք են: Հարցաքննիչ դատաւորները՝ երբ վստահ չեն ամբաստանեալի մեղաւորութեան մասին, ատիկա գնահատելու հոգը պէտք չէ ձգեն երդուեալ դատաւորներու, այլ իրենք իսկ տան որոշումը՝ համաձայն իրենց հոգիին ու խղճին: Կ՚աւելցնէ թէ ինք չի վախնար խնդրին Եղեռնադատ Ատեանի առջեւ հանուելէն· ընդհակառակն: Սակայն «իմ և ձեր պարտականութիւնն է, առանց պատճառի, նոյնիսկ 24 ժամ չերկնցնել արգելափակումը անմեղի մը, որ ձերբակալուած եւ հետապնդուած է առանց փաստի, ֆրանսական քաղաքացիի մը, որ ամուսնացած է եւ հայր՝ չորս զաւակներու»:

Վերջացնելով կը պահանջէ չեղեալ համարել Ալմազեանի դէմ բացուած ամբաստանութիւնը եւ ազատ արձակել զայն:

⁂ Թերթի մը համաձայն, Ալմազեան պիտի ղրկուի Եղեռնադատ Ատեանին առջեւ, ուր պիտի դատուի Մայիս 7—8:

## Իտալիոյ օդանաւային ուժը եւ Ֆրանսա

«Ճոռնալէ տ՚Իտալիա» երկար յօդուած մը կը նուիրէ Իտալիոյ օդանաւային ուժին, որուն ելմտացոյցը այս օրերս պիտի քննուի խորհրդարանին կողմէ: Կ՚ըսէ թէ նիւթական միջոցներու նեղութեան պատճառաւ, Իտալիոյ օդանաւային ուժը շատ աւելի տկար է քան Ֆրանսայի, Ռուսիոյ եւ Եուկոսլաւիոյ ուժերը: Պէտք է հաշուի առնել նաև որ Եուկոսլաւիոյ օդանաւերը ֆրանսականներուն լրացուցիչ մասը կը կազմեն:

Իտալիա վերջին հինգ տարիներու ընթացքին ծախսած է է միայն 2 միլիառ 238 միլիոն: Այս գումարը շատ քիչ է, մանաւանդ երբ նկատի առնենք որ Ֆրանսայի պէս ուրիշ պետութիւններ ալ մեծ զարկ կուտան օդային սպառազինութեանց քաղաքականութեան: Ֆրանսայի զինուորական օդանաւային ուժը, կ՚ըսէ «Ճոռնալէ տ՚Իտալիա», կը գլէ կ՚անցնի իտալական, անգլիական եւ ռուսական օդանաւային ուժերը: Ասիկա մտածել պէտք է տայ Իտալիան:

## Ամանուլլահ Իտալիա կը դառնայ

Հռոմ, 10 մարտ.— Աֆղանիստանի նախկին թագաւորը Պոլսոյ եւ Պրինտիզիի ճամբով Հռոմ հասաւ այս առաւօտ: Դիւանագիտական շրջանակներու մէջ զանազան մեկնութիւններ կը տրուի այս անակնկալ վերադարձին: Կ՚ըսուի թէ Ամանուլլահ առայժմ հրաժարած է իր հայրենիքը վերադառնալէ եւ վերստին ձեռք ձգելէ գահը, ինչպէս ծրագրած էր Մուսթաֆա Քէմալի հետ համաձայնութեամբ: Ամանուլլահ այս անգամ աֆղանական դեսպանատան մէջ չպիտի նստի, ինչպէս նախապէս, այլ Օրացիօ փողոցի գեղեցիկ մէկ ապարանքին մէջ, զոր գնեց վերջերս:

⁂ Ամանուլլահի խորթ եղբայր Սէրտար Ամին Խան եւ նախկին առեւտրական պատուիրակ Ապտիւլ Հաքիմ Խան, որոնք անցեալ ամիս ձերբակալուած էին իբրեւ դաւադիր, Պիրմանիա աքսորուեցան:



Le Gérant H. STEPHAN



Հ. Յ. Դ.

Լիոնի Պատ. միութեան ընդհ. ժողովը՝ վաղը հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Դրադարանի սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

### ՄՏԱԾՈՒՄՆԵՐ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Գրեց՝ Ն. Հանգոյց

(Մատենաշար Դրօշակ Թիւ 68)

Տպ. Փարիզ 1930: Գին 5 ֆր., Ամերիկա 25 սէնթ: Դիմել Լեւոն Թաղէոսեանի, 71 Ave. Kléber, Paris (16).

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Ֆրանսական բանակի կամաւորներէն Յակոբ Գրիգորեան (բուն անունը Յակոբ Նազարեան) որ 1928ին Փարիզէն մեկնած է գալու: Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Մարսէյլ կամ շրջականները: Իմացնել՝ իր մօր Տիկ. Սրբուհի Նազարեանի, 16 Rue Blanqui, Paris (13e): Ճշգրիտ լուր տուողին նուէր:

— Կը փնտռուի Օր. Ազապի Պօշնակեան որ 1926ին Յունաստանէն փոխադրուած է Ֆրանսա: Իր վերջին հասցէն էր՝ Chez Mr. Beylerian, Joyeuse, Ardèche: Այժմ իրմէ լուր չկայ: Իմացնել՝ Սահակ Պօշնակեանի, Fontafi par Genouillac, No. 19, (Charente).

— Կը փնտռուի Բալուի Արթուխան գիւղէն Գրիգոր Պապօեան, որ կը կարծուի թէ այժմ Ռուսիա կը գտնուի: Իր հասցէն կամ իր մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել իր որդւոյն Միքայէլ Պապօեանի, Usine de Gromelle, St. Saturnin les Avignons, (Vaucluse), France:

Կը խնդրուի արտասահմանեան թերթերէն արտատպել:

— Կարնեցի Վահէ Նարինեան կը փնտռէ Սեբաստացի Յովհաննէս Գըզըրեան: Կը կարծուի թէ կը գտնուի Մարսէյլ կամ շրջականները: Իմացնել «Յառաջ»ի:

— Յարութիւն Պուռնազեան կը փնտռէ իր եղբայրները Յովհաննէս եւ Գեղամ Պուռնազեաններ, որոնք Շ. Գարահիսարի ապստամբութենէն յետոյ աքսորուած են իրենց մօր հետ: Այժմ պիտի ըլլան 18 եւ 20 տարու: Իմացնել «Յառաջ»ի: Ճշգրիտ տեղեկութիւն տուողին նուէր:

—Կը փնտռուին գարապօղազցի Հմայեակ ճէօմէրտեան, 20 տարեկան, հօր անունը՝ Խնկօ, մօր անունը՝ Թուրվանտա տարագրութեան միջոցին յանձնուած է Ուրֆայի եկեղեցին. Ենոքիա, Միւշկիւնազ, Դեղխի ճէօմէրտեան (այս վերջինը առեւանգուած է Թել Ապեատի շրջանի Արաբներու կողմանէ), հօր անունը՝ Ոսկիան, մօր անունը՝ Անիկ: Կաթնուկ, հօր անուն Դանիէլ, մօր անուն Հալաճ: Իմացնել Աղապապ Պարսամեանի, 32 Jules-Gevelot, Issy-les-Moulineaux, Seine, France.

Կը խնդրուի Սուրիահայ Թերթերէն արտատպել:

Կը փնտռուի նաեւ Նազլու Պարսամեան եւ իր երեք զաւակները, Ռուբէն, Անթառամ, Հռիփսիմէ որոնք Արաբկիրի շրջանին մէջ առեւանգուած են Քիւրտերու կողմանէ: Իմացնել՝ Աղապապ Պարսամեանի վերի հասցէին:

— Տիկին Աղաւնի Վառեկեան ծնեալ (Ճգնաւորեան) կը փնտռէ իր հայրը Միսաք Ճգնաւորեան, մայրը Դշխուհի, եղբայրները Գէորգ, Պետրոս, Սեդրաք, Վահրամ Հայրապետ, քոյրերը Արաքսի, Փայլիկ, որոնք քննիկ Կիւմիշխանէի Այանթաղէնըլլալով տարագրուած էին, եւ անկէց իվեր ոեւէ լուր չկայ անոնցմէ: Լուր տուողին նուէր: Իմացնել Տիկ. Ա. Վառեկեանի, 11 Rue Bisson Paris (20).

### ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

Ա. Ահարոնեանի յոբելեանական յանձնախումբերու Ուրբաթ իրիկուան ժողովը:

կարգ մը լրացուցիչ քննութիւններ կատարուին, որովհետեւ հիմակուան ամբաստանութիւններով կարելի չէ Եղեռնագատ Ատեանին առջեւ ղրկել զայն։

Քննութեան կարօտ կէտերն են հետեւեալները.

1. Ստուգել ինքնաշարժիվարիչ Ֆլոթիվկայութիւնը, որովհետեւ կարգ մը փաստեր բոլորովին կը ջրեն անոր այն հաւաստումը թէ ոզորենիէ մնտուկը Ալմազեանի խանութէն առած եւ կար տիւ Նոռ տարած է։ 2.— Ստուգել վկայութիւնը գինեվաճառ Մէյէրի, որ կ՚ըսէր թէ օր մը Սէն Ժիլ փողոցին մէջ տեսած էր Բիկոտէնը, երբ անիկա կ՚ուղղուէր դէպի Ալմազեանի խանութը՝ Ամբաստանող կողմը կ՚ըսէր թէ ատիկա ոճիրին օրն էր։ 3.— Քննել թէ ինչո՞ւ ո՛չ Պ. Ամիի եւ ո՛չ ալ փրոֆէսէօրներուն կողմէ չեն տարրալուծուած արեան այն հետքերը, որոնք քննութեան սկիզբը առնուած էին Ալմազեանի տափատին եւ խանութին ետեւի դրան քովի աթոռակին վրայէն (Ալմազեան իր կատուին համար ամէն օր թոք կը կախէր այդ դրան քովէն)։ 4.— Ստուգել Ալմազեանի դրամական աղբիւրները, հասկնալու համար թէ իրապէ՞ս սեպտեմբեր 9էն (ոճիրին օրը) առաջ նիւթական միջոցներ չունէր եւ անկէ վերջ ունեցաւ։

Ամբաստանիչ ատեանը դեռ չտուաւ իր որոշումը այս մասին։ Յաջորդ նիստին պիտի որոշէ թէ նոր քննութիւնը անհրաժե՞շտ է թէ ոչ։ Անհրաժեշտ նկատուելու պարագային, վերաքննիչ ատեանի խորհրդականի մը պիտի յանձնուի այդ պաշտօնը։ Այնպիսի մէկուն որ խառնուած չըլլայ մինչեւ հիմա։

Այս առիթէն օգտուելով, փաստաբան Լըկրան կը պահանջէ դարձեալ, որ ժամանակաւորապէս ազատ արձակուի Ալմազեան, որ հինգ ամիսէ ի վեր բանտն է։

## Թուրք նաւատորմը դէպի Մալթա

Թուրք թերթերը կը գրեն թէ յառաջիկայ մայիսին Մալթա պիտի երթայ թրքական նաւաբաժին մը՝ գլխաւորութեամբ «Եավուզ»ի, փոխադարձ այցելութիւն տալու համար Միջերկրականի անգլիական նաւատորմին վերին հրամանատար Սըր Ֆրէտէրիք Ֆիլտի, որ անցեալ հոկտեմբերին Պոլիս եւ Էնկիւրի գացած էր։

## Կեղծ ինքնութեան թուղթեր Մարսիլիոյ մէջ

Անցած օր գրած էինք թէ ոստիկանութիւնը Մարսիլիոյ մէջ երեւան հանած է Յոյն մը որ կեղծ ինքնութեան թուղթեր կուտար իր հայրենակիցներուն՝ կարեւոր գումարի մը փոխարէն։

Այս անգամ երեւան հանուած է ուրիշ խարդախութիւն մը, որուն հեղինակները ինքնութեան թուղթեր կը հայթայթէին այն հայ եւ իտալացի աշխատաւորներուն, որոնք Ֆրանսա եկած էին առանց աշխատանքի պայմանագրութեան։ Գործին մեղսակից էր նաեւ Մարսիլիոյ արուարձաններէն Փէն-Միրապօի քաղաքապետարանի մէկ պաշտօնեան, որ դրամ կը ստանար թարգմանի մը միջոցաւ։ Տարօրինակն այն է որ այս վերջինը ոստիկանութեան պաշտօնական թարգմանն է եւ վերջերս ինք է որ թարգմանի պաշտօն կը կատարէր կեղծարար Յոյնին հարցաքննութեան ատեն։ Ոստիկանութիւնը կը շարունակէ քննութիւնները եւ նոր մարդիկ պիտի ձերբակալուին։

## Ռայխսթակը ընդունեց Եունկի ծրագիրը

Եընկի ծրագիրը, որուն շուրջ այնքան աղմուկ բարձրացաւ Գերմանիոյ մօջ, մանաւանդ ազգայնականներուն կողմէ և որուն վաւերացման մասին վախեր կային, առջի օր երկրորդ ընթերցումով վաւերացուեցաւ։ Դեռ օր մը առաջ մեծամասնութիւն չէր գոյացած ծրագիրը վաւերացնելու համար։ Կառավարութիւնը իր այս յաջողութիւնը կը պարտի Հանրապետութեան Նախագահ մարաջախտ Հինտէնպուրկի, որ գերման կաթոլիկ կուսակցութեան Նախագահին յայտարարած էր թէ ինք ստորագրութիւնը չպիտի դնէ համաձայնագրի մը տակ, որ խորհրդարանի կարեւոր մէկ մեծամասնութեան քուէները չստանար եւ թէ ի հարկին անհրաժեշտ պիտի ըլլայ նոր հանրաքուէի մը դիմել։

## Լոնտոնի Խորհրդաժողովը

Ֆրանսական պատուիրակներուն վերադարձէն ի վեր, Լոնտոնի նաւային խորհրդաժողովը վերակենդանութիւն ստացաւ։ Պրիան երէկ հրապարակային յայտարարութիւն մը պիտի ընէր, անգամ մը եւս պարզելով ֆրանսական տեսակէտը։ Ամերիկա չուզեր նոր յանձնառութիւններ ստանձնել։ Իսկ Անգլիա կը ձգտի Ֆրանսայի վրայ նետել խորհրդաժողովին ձախողութեան ամբողջ պատասխանատուութիւնը ու կը պնդէ որ Ֆրանսա եւ Իտալիա զեղչեն իրենց պահանջները։ Իր յուշագրին մէջ, վարչապետ Թարտիէօ պահանջած էր որ 1936ին Ֆրանսա ունենայ 712000 թոնօ տարողութեամբ նաւատորմ։ Անգլիա կ՚ուզէ 600,000 կամ 550,000 թոնոյի զեղչել ասիկա, այնպէս որ Անգլիա Ֆրանսայի կրկնապատիկ ուժն ունենայ։ Սակարկութիւնները կը շարունակուին։

## Անգլիոյ Ելմտացոյցը

Անգլիոյ 1930-31ի ելմտացոյցը անցած տարուան հետ համեմատելով 55 միլիոն ոսկիի յաւելում մը պիտի ունենայ։ Բանակի ծախքերը 1,500,000 ոսկի պիտի պակսին։ Օդանաւերուն պիտի յատկացուի 17,850,000 ոսկի, այսինքն անցած տարուանէն 890,000 ոսկի աւելի։

## Հոլանտա ցորեն չի գներ Ռուսիայէն

Ռոթերտամի Հոլանտական Երկրագործական կոմիտէի կեդրոնական մարմինը, որուն միջոցաւ ցորեն կը գնուի Հոլանտայի Գիւղացիներու Միութեան հաշուոյն, որոշեց այլեւս ռուսական ցորեն չգնել, արգիլեց նաեւ իր անդամներուն՝ յառաջիկային նման գնումներ ընել։ Այս որոշումը տրուեցաւ, կ՚ըսէ Ռիւթէրի գործակալութիւնը, ցորեն ստանալու համար խորհրդային կառավարութեան գործածած մեթոտներուն պատճառով, յետոյ անոր համար որ ցորենի վաճառումէն գոյացած դրամը կը գործածուի արտասահմանի մէջ համայնավար գրգռութիւն առաջ բերելու։ Ներկայիս հոլանտական շուկային մէջ ռուսական հացահատիկի, մանաւանդ գարիի չափազանց մեծ մթերք մը կայ։





Հ. Յ. Դ. ԴՊՐՈՑ
10րդ. ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ
Այսօր Հինգշաբթի 60 Rue des Ecoles, Chope Parisienne.
Ա. Ժամ 9—10՝ Քաղաք. հոսանքներ ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆ։
Բ. Ժամ 10—11՝ Հ. Յ. Դ. Պատմութիւն ԿԱՐՕ ՍԱՍՈՒՆԻ։

Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

Անիէռ Պուա Քոլոմպի Զէյթուն ենթակոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ «Եռագոյն», «Վիշապեան» եւ «Փոթորիկ» խումբերը վաղը իրիկուն ժամը 8.30ին 79 Rue des Chambards, Պուա Քոլոմպ։

ԳԱՒԱՌ

Լիոնի Պատ. միութեան ընդհ. ժողովը՝ վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

Վիէնի «Քրիստափոր» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը ուրբաթ երեկոյ ժամը 7ին Հ. Յ. Դ. ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԽԱՐԲԵՐԴՑԻՆԵՐՈՒ Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղը ընդհանուր ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ բոլոր հայրենակիցները այս շաբաթ երեկոյ ժամը 9ին Ֆլօրիա ճաշարանը, 61 Rue Monsieur le Prince։ Խիստ կարեւոր օրակարգ։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN



ՕՐՈՒԱՆ ՀԱՐՑԸ

— Տիկին մը ո՞ւր կրնայ գտնել վերջին նորաձեւութիւնները ամենասիրուն, ամենատոկուն եւ միեւնոյն ատեն անմրցելի գինով, պատրաստ կամ չափու վրայ մետաքսէ եւ բուրդէ զգեստներ, մանթօ, գլխարկ, ներքնազգեստ (lingerie) եւայլն։

— Տիկ. Ա. ՊՈՒՏԱԿԵԱՆԻ «ՄԱՏԼԷՆ» հայ վաճառատունը կ... կասկած, 33 Rue des Dames, Métro Rome կամ Clichy. Մուտքը ազատ է ամէն օր մինչեւ 8, կիրակի մինչեւ 2։








## Ցոյցեր փրոֆեսորներուն դէմ

Վերջին օրերս կարգ մը ցոյցեր պատահեցան Փարիզի համալսարանին մէջ: Իրաւաբանական վարժարանի արքայական ուսանողները աղմկեցին եւմտական գիտութեան ուսուցիչ փրոֆ. Կաս[թ]ոն Ժէզի դասախօսութեան ատեն, անոր ազատամիտ գաղափարներուն համար:

Իսկ բժշկական վարժարանին մէջ քիմիաբանութեան ուսուցիչ փրոֆէսէօր Պլանշըթիէրի դէմ ալ քանի մը անգամ ցոյցեր կատարուեցան անոր համար որ լիշեալը խիստ է քննութեանց մէջ:

Նկատի առնելով որ ցոյցերը կը շարունակուին եւ կարգը կը խանգարեն վարժարանին մէջ, համալսարանի վերատեսչութիւնը որոշեց յիշեալ փրոֆէսէօրին դասերը դադրեցնել մինչեւ մարտ 22 շաբաթ օր: Պլանշըթիէր Մարսէյլի համալսարանը պիտի փոխադրուի նոյն պաշտօնով:

## Պայքարը մուէզզիններուն դէմ

Մոսկուայէն կը հեռագրեն.—

«Կոմսոմոլսկայա Պրաւդա» կը պահանջէ խիստ եւ ստիպողական միջոցներ ձեռք առնել իսլամ կրօնաւորներուն դէմ, ըսելով թէ ամբողջ խորհրդային միութեան մէջ մուէզզիններ բացէ ի բաց հակառակ են հողագործական տնտեսութեանց համայնացման եւ վտանգաւոր թշնամիներ բանուոր դասակարգին:

## Համայնավարները Վառնայի մէջ

Սոֆիայէն կը հեռագրեն թէ պուլկար ոստիկանութիւնը խուզարկած է Վառնայի բանուորական կուսակցութեան ակումբը եւ ձերբակալած կոմիտէն ամողջութեամբ, ընդամէնը 12 հոգի, որոնց մէջ է նաեւ Ավրամ Կաչէֆ, թաղապետական խորհրդական:

## Տիկին Հանօի հացադուլը

Տիկին Մարթ Հանօ շուրջ 15 օրէ ի վեր կը շարունակէ հացադուլը: Վիճակը ծանրացած ըլլալով, Սէն Լազարի բանտէն փոխադրուեցաւ Քոշէնի հիւանդանոցը: Տիկինը խնդրագիր մը ուղղեց Երեսփ. Ժողովին, բողոքելով 1928 դեկտ. 3ին «Կազէթ տիւ Ֆրան»ի գրասենեակներուն գրաւման դէմ Պ. Փաշոյի կողմէ առանց դատաւորի հրահանգին: Խնդրագիրը պիտի քննուի:

### ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՀՆԴԿԱՍՏԱՆԻ «անհնազանդութեան» պայքարը սկսաւ Պիքուլայէն, ուր վայրաշարժի գործարանին բանւորները գործադուլ ըրին: Ոստիկանութիւնը գաւազաններով յարձակեցաւ ցուցարարներուն վրայ, որոնցմէ 50 հոգի վիրաւորուեցան:

ՌԱՅԽՍԹԱԿԸ աղմկալի նիստ մը գումարեց առջի օր, երբ ներքին նախարարը Սէվէրինկ Հանրապետութեան պաշտպանութեան օրէնքներու վիճաբանութեան առթիւ բուռն ճառ մը խօսեցաւ թթու ազգայնականներուն եւ կարմիր համայնավարներուն դէմ, որոնք կը ձգտին տապալել հանրապետութիւնը: Նիստը ընդհատուեցաւ ծայրայեղեան երեսփոխաններու աղմուկին պատճառաւ:

ԱՆԳԼԻՈՅ երեսփ. ժողովին մէջ պահպանողականներու պետը Պօլտուին բուռն կերպով յարձակեցաւ Մաքտոնըլտի կառավարութեան դէմ, որ չէ կրցած առաջքն առնել գործազրկութեան եւ թէ առեւտուրը ծանր վիճակի մը մատնուած է: Այս առթիւ ներկայացուց բանաձեւ մը, որ մերժուեցաւ 235ի դէմ 308 ձայնով:





ԱՊՐԻԼ 11-24Ի ՍԳԱՏՕՆԸ ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Զ. Ե. Ո. Միութեան Վալանսի մասնաճիւղին: Պիտի հրաւիրուին տեղւոյն բոլոր կազմակերպութիւնները: Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ:*



Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները այս իրիկուն ժամը 9ին 27 Bld. Carnot: Օրակարգ՝ հաշուետուութիւն կարգադիր յանձնախումբի, եւն.:

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ Զաւարեան ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Վռամեան, Մջօ եւ Մուրատ խումբերու վարչութեան անդամները այս իրիկուն 7.30ին, Իսի լէ Մուլինոյի պիւրօ թապայի մէջ:

Գանձապահ ընկերները ներկայանան տետրակներով:

*ԳԱՒԱՌ*

ՍԱԼԻՆ ՏԸ ԺԻՌՕԻ Բաբկէն Սիւնի խումբի ժողովը՝ վաղըկիրակի ժամը 4ին ծանօթ հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Հ. Կ. Խ. Մարսէյլի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամ-անդամուհիները վաղը կէս օրէ վերջ ժամը 3ին,* 63 Rue République: *Օրակարգ՝ զեկոյց վարչութեան, հանգանակութեան հաշուետուութիւն, Ա. Ահարոնեանի յոբելեանը, եւայլն:*

*ԽԱՐԲԵՐԴՑԻՆԵՐՈՒ Հայր. Միութեան Փարիզի մասնաճիւղը ընդհանուր ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ բոլոր հայրենակիցները այսօր շաբաթ երեկոյ ժամը 9ին Ֆլօրիա ճաշարանը, 61* Rue Monsieur le Prince: *Խիստ կարեւոր օրակարգ:*

ՈՒՐՖԱՅԻ ՀԱՅՐ. Միութեան ժողովը՝ վաղը իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ Փըթիթ Սուրսի մէջ: Մէթրօ Օտէոնի դիմացը:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Եկեղեցիի սրբապղծում Պերլինի մէջ

Պերլինի համայնավարները սրբապղծեցին երկու եկեղեցիներ։ Կաթոլիկներու Ս. Սեբաստիանոս եկեղեցիի արտաքին պատերուն եւ գլխաւոր սանդուղներուն վրայ խոշոր կարմիր տառերով գրուած էին. «Կրօնքըափիոն է ժողովուրդին համար», «Անկցի՛ն կրօնականները», «Մենք կը պաշտպանենք խորհրդային միութիւնը»։ Անկէ զատ կարմիր ներկ քսուած էր սուրբի մը դէմքին վրայ։ Իսկ Մոապիթի բողոքական եկեղեցիին առջեւ կէս գիշերին 5 - 6 երիտասարդներ սկսան քարկոծել ապակիները եւ կոտրեցին ելեկտրական ապակեայ շրջանակ մը, որուն վրայ Աստուածաշունչէն համարներ կը դառնային։

Կը կարծուի թէ Պերլինի համայնավարները օրինակ առնելով Ռուսիոյ իրենց եղբայրներէն, ծրագրած են հակակրօնական պայքարի մը ձեռնարկել Գերմանիոյ մէջ։

## Լիթուանիոյ դահլիճը հրաժարած

ՊԷՅՐՈՒԹ, 20 մարտ.— Պ. Էմիլ Էտտէի դահլիճը խորհրդարանին կողմէ փոքրամասնութեան մէջ մնացած ըլլալով, հրաժարականը ներկայացուց Հանրապետութեան Նախագահին։ Հաւանաբար այս վերջինը դարձեալ Պ. Էտտէի յանձնէ նոր կառավարութիւնը կազմելու պաշտօնը։

## Պարսկաստանի ելմտացոյցը

Պարսիկ կառավարութիւնը մէջլիսին ներկայացուց 1930—31ի ելմտացոյցը։ Հասոյթ նախատեսուած է 5,899,580 ստեռլին, բացի Անգլեւպարսիկ քարիւղի ընկերութեան տալիք մենաշնորհի տուրքը։ Ծախք հաշուուած է 5,883,130 ոսկի։

## Մեծ հրդեհ Պարսկաստանի մէջ

Թէհրանէն կը հեռագրեն թէ Պէնտէրկեազի մէջ, Կասպից ծովու եզերքին մօտ, մեծ հրդեհ մը ծագած է։ Այրած են 394 տուներ։ Բոցերուն մէջ եւ փլատակներուն տակ մնալով մեռած եւ վիրաւորուած են որոշ թիւով մարդեր։ Մանրամասնութիւնները կը պակսին։

## Ցոյցեր կը շարունակուին

Հինգշաբթի օր բժշկական համալսարանի ուսանողները շարունակեցին ցոյցերը փրոֆ. Պլանշըթիէրի դէմ։ Ցուցարարները պաշարած էին դուռը այն սրահին ուր տեղի պիտի ունենար յիշեալ փրոֆէսէօրին դասախօսութիւնը։ Կէս ժամ սպասելէ վերջ, տեսնելով որ անկարելի է ներս մտնել, Պ. Պլանշըթիէր վարժարանէն մեկնեցաւ, դուրս ելլելով Պուլվար Սէն Ժէրմէնի վրայ բացուող դուռնէ մը, մինչ հարիւրաւոր ուսանողներ խռնուած էին Էքոլ-տը-Մէտիսին փողոցի մուտքին առջեւ։ Պոռչտուքներ, բացագանչութիւններ եղան, բայց որեւէ ծանր միջադէպ չպատահեցաւ։



**ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ, 71 AVE. KLÉBER**

Այսօր Շաբաթ իրիկուն։ Կը խօսի՝ Օհան Կարօ։ Նիւթ՝ «Հայ ժողովրդական բանահիւսութեան յատկանիշները»։



## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ՊԱՆԷԼՕ-ՔԱՇԱՆի Արծիւ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Միասին բերել 1929ի անդամատետրերը։

**ԳԱՒԱՌ**

ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ժողովը՝ այս իրիկուն ժամը 9ին ընկ. Ն. Ալատինեանի բնակարանը։

ԼԻՈՆԻ կոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը՝ Կիրակի առաւօտ ժամը 8ին Գ. Թաղապետարանի Գրադարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։ Ներկայանալ անդամատետրով։

ՄԱՐՍԷՅԼԻ ընկեր Կարօ խումբի ժողովը՝ վաղը՝ Կիրակի իրիկուն ժամը 4.30ին, 35 Bld Jean Verjus Grand Vest, ընկեր Սարգիս Պօյաճեանի բնակարանը։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ կոմիտէն ստիպողական ժողովի կը հրաւիրէ «Իշխան» ենթակոմիտէի բոլոր ընկերները վաղը Կիրակի ժամը 2ին սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ՄԱՐՍԷՅԼԻ Պուլվար Օտտօի Վռամեան ենթկ. ընդհ. ժողովի կը հրաւիրէ Հրայր եւ Մուրատ խումբերու բոլոր ընկերները վաղը Կիրակի ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրով։

Հ. Յ. Դ. Սէն Շամոնի Ենթակոմիտէի ընդհ. ժողովը՝ վաղը՝ Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին իր ակումբին մէջ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՇԱՎԻԼԻ երիտասարդաց երկսեռ միութեան ընդհ. ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, ծանօթ հաւաքատեղին։

Զ. Ե. Ռ. Միութեան Մարսէյլի մասնաճիւղի ժողովը՝ վաղը կիրակի ժամը 2.30ին Պուլվառ տը կոմիէ 23, սրճարանի ներքնասրահը։ Կարեւոր օրակարգ։ Կը հրաւիրուին անդամագրուիլ փափաքողները։

ՄԱՐՍԷՅԼԻ Վասպուրականի Հայր. Միութեան ընդհ. ժողովը՝ վաղը կիրակի ժամը 3ին, 4 Place d'Aix (փլաս Տէքս 4) Պ. Յ. Պոյաճեանի պանդոկին մէջ։ Օրակարգ՝ հաշուետուութիւն վարչութեան, նոր վարչութեան ընտրութիւն, վանի Ապրիլեան Հերոսամարտի 15 ամեայ տարեդարձը։ Ժողովը երկրորդ անգամ հրաւիրուած ըլլալով, անկախ ներկաներու թիւէն, օրինական պիտի համարուի։ Կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ բոլոր հայրենակիցները։

ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅ Մարմնամարզական «Արծիւ» Միութեան ընդհ. անդամական ժողովը՝ այս կիրակի առաւօտ ժամը 9.30ին Սէն Լու, Կրանփէն ակումբ—ընթերցասրահին մէջ։ Բոլոր անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԼԻՈՆԻ Բարձր-Հայքի Հայրենակցական Միութեան վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր Լիոնաբնակ անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները այսօր Շաբաթ ժամը 5ին, Բարձր-Հայք ճաշարանը, 4 Rue François-Garcin, Միութեան կեդրոնատեղին։ Օրակարգ՝ Հաշուետուութիւն, զեկոյց եւայլն։

**ԹԷՅԱՍԵՂԱՆ ԽՆՃՈՅՔ**

կազմակերպուած Պարսկահայերու Միութեան կողմէ, վաղը՝ Կիրակի երեկոյ ժամը 8.30ին «Ֆլօրիա» ճաշարանը։ Նուագ, երգ, պար, սեննական խաղեր եւ անակնկալներ։ Կը հրաւիրուին բոլոր Պարսկահայերն ու համակիրները։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Լա Սիոթա, Ա. Թ.— 120։
Պերլին, Վ. Մ.— 165։
Թաւրիզ, Գործ.— 1450։
Փիւժէ, Կ. Մ.— 50։
Մարսէյլ, Կ. Կ.— 35։
Ֆիլիպէ, Գործ.— 25 տոլար։
Ժընուլեակ, Ս. Պ.— 35։
Վիվիէ, Ա. Ա.— 35։
Տիկուան, Ս. Ի.— 35։
Մարսէյլ, Կ. Պուլ.— 35.
Տէսին, Ճիհ.— 50։
Լիոն, Գործ.— 760.50։
Մարսէյլ, Գ. Կ.— 35։
Փարիզ, Յ. Փ.— 35։
Մարսէյլ, Գործ.— 1031։
Կիպրոս, Հ. Ա. Կ.— 1 անգլ.։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Յովհաննէս Վահանեան կը փնտռէ իր եղբայրը Մուշի Խաշխալտաղ գիւղացի Ազատ Վահանեան, որ 1915ի տարագրութեան միջոցին յանձնուած է իրենց գիւղացի Քիւրտ Ալի պէյի։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուի Ամերիկա։ Իմացնել Hovannes Hovannessianի, 14 Rue Wilson, Décines, (Isère). France.

Լուր տուողին մէկ տարեկան «Յառաջ» եւ 200 ֆրանք նուէր։

Կը խնդրուի «Հայրենիք» օրաթերթէն արտատպել։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN










ՀԱՒԱԲՈՅԾՆԵՐՈՒՆ



եթէ կը փափաքիք որ ձեր հաւերը առատ աճեն, շուտ մեծնան, շուտ պարարտանան, չհիւանդանան, անօգուտ է հին մեթոտներու հետեւիլ:

Համեստ դրամագլխով գոհացուցիչ շահ մը ապահովելու համար փութացէք կարդալ գիւղատնտես Օ. Շէքիտճեանի պատկերազարդ «ՀԱՒԱԲՈՒԾՈՒԹԻՒՆ» գիրքը: Գին՝ 25 ֆրանք. դիմել՝ հեղինակին 18, Villa des Roses, Bois-Colombes (Seine), Պալենց գրատուն կամ Գեւոնեանի՝ «Յառաջ»ի խմբագրատունը:

մեծաքանակ գնողին գոհացուցիչ զեղչ:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

